### ՆԱՆԹԻ ԴԷՊՔԵՐԷՆ ՎԵՐՋ

Նանթի մետաղագործական ճարտարարուեստի բանուորներն ու գործատէրերը կիրակի չարունակեցին բանակցութիւննե-րէնի մէջ ։ Շրջանային նահանգապետը ըսած էր որ երկու պատուիրակութիւն - ները ջանան համաձայնութեան եզր մը գտնել, վերաբանալու համար գործարան-ները ։ Ի վերջոյ երկու պատգամաւորու - թիւնները հաւանեցան որ գործարանները բացուին 23 Օգոստոսին եւ աշխատանքը վերսկսի համաձայն Օգոստոս 16ի կացու-թեան ։ Երկուստեք համաձայն են որ հիմ-նական վէճերը շուտով լուծուին ։

Այս համաձայնութիւնը բանուորներու հաւանութեան պիտի ենթարկուէր երկու-շաբթի առտու աշխատանոցներու մուտ - քերուն առջեւ եւ հաստատման պարագա - յին վերաբացումը պիտի կատարուի ե - րեքշաբթի առտու (այսօր) ։ Երկուշաբթի օրավարձքերը պիտի վճարուէին Մայիս մէկի վճարումներու հիման վրայ ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՍՈՒՏԱՆԻ բանակին մէջ ծագած ըմ - բոստութիւնը կը ծաւալի, համաձայն վերջին լուրերու ։ Շատ մը ըմբոստներ ձերբակալուած են, իսկ ուրիշներ լեռնե - րը ապաստանած ։

10·226 ԱՐԻՆԵՐ (սկաուտ) կը մասնակ-ցին 8րդ համաշխարհային ճամբարին, որ բացուեցաւ կիրակի, 21 Օգոստոս, Նիակարայի մէջ, նախագահութեամբ Քանատայի կուսակալին ։ Ինչպէս յայտնի է,ափ մը հայ արիներ ալ կը մասնակցին, 68 ազգերու ներկայացուցիչներուն հետ ։

ՄՈՍԿՈՒԱՅԻ մէջ տնտեսական բանակ - ցութիւններ կը կատարուին Խ․ Միու - թեան եւ Եուկոսլաւիոյ միջեւ ։ Մառեշալ Վորոշիլով ընդունելով Պելկրատի պատ - ուիրակութիւնը, ըսաւ թէ «ճշմարիտ գա-րուն մը բացուած է մեր յարաբերու - թեանց մէջ» ։

ԾԱՆՐ ԱՐԿԱԾ ՄԸ պատահեցաւ Արտէ - շի մէջ ։ Մոնփըզայի լարաձիգ երկաթու - ղին (ֆինիքիւլէռ) մեքենան կոտրելով կառքը թաւալգլոր վար սահեցաւ եւ ջախջախուեցաւ վարի մեքենաներուն վը-րայ ։ Հետեւանքը — տասը մեռեալ եւ մէկ ծանր վիրաւոր, ամէնքն ալ զբօսաշրջիկներ ։

Խ․ ՄԻՈՒԹԵԱՆ Կեդր․ Կոմիտէին ընդ-հանուր քարտուղարը, Խրուշչեւ, Պուքրէշ գնաց, Ռումանիոյ «ազատագրման» մե-տասներորդ տարեդարձին առթիւ ։

ԵԳԻՊՏՈՍԻ վարչապետին Մոսկուա այ-ցելութեան առթիւ, Խ․ Միութեան պաշտօնաթերթերը կը գրեն թէ այդ հան-դիպումը պիտի սատարէ երկու երկիրնե - րու բարեկամական կապերու ամրապնդ - ման եւ պիտի նպաստէ ընդհանուր խա - ղաղութեան ։ «Հակառակ վարչաձեւերու տարբերութեան, երկու երկիրները կը ձգտին հաշտ ապրիլ եւ առկախ հարցերը լուծել համաձայն համակեցութեան սկզ - բունքներու » ։

ԾԱՆՐ ՈՂՈՂՈՒՄՆԵՐ տեղի ունեցան Միացեալ Նահանգներուն մէջ ։ Արդէն 183 մեռեալ կը հաշուեն եւ առ նուազն նոյն - քան անհետացած ։ Նիւթական վնասը՝ մէկ միլիառ տոլար ։

ՀԻՒԼԷԱԿԱՆ ժողովի փակման առթիւ, որ տեղի ունեցաւ շաբաթ օր, Հնդկաստա-նի պատուիրակը, Պհապա, իբրեւ ժողովին նախագահը կարդաց մարաջախտ Բուլկա-նինի նամակը՝ որ յոյս կը յայտնէ թէ հիւլէական խորհրդաժողովը պիտի ծառա-յէ խաղաղութեա՛ դատին եւ միջազգային կացութեան բարելաւման ։ Նախագահ Այ - զընհաուըրն ալ գոհունակութիւն յայտնե-լով, կը յուսայ թէ երկրորդ ժողով մը ա-ւելի պիտի զօրացնէ գործակցութեան ո - գին ։

ԱՆԳԼԻՈՅ Մարկարէթ իշխանուհին իր ծննդեան 25ամեակը տօնեց կիրակի օր, ընտանեկան շրջանակի մէջ ։ Շաբաթ օր մասնակցեցաւ բարենպատակ վաճառքի մը (պազար) ։ Խոտին վրայ քալած առե՛ն ոտքը սահեցաւ, եւ բժիշկը 24 ժամ հան-գիստ պատուիրեց ։ Թերթերը կը գրեն թէ վաճառքի պահուն արեւ - քրտինք մտած էր եւ ամէնէն շատ ապրանք ծախեց ։

ԽԼԻՐԳԷՆ (քանսէր) 74·500 հոգի մե - ռած են Ֆրանսայի մէջ, 1954ի ընթաց - քին ։

ԿԻՊՐՈՍԷՆ արտաքսուեցաւ յոյն արհի-մանդրիտ մը, որ դատ բացած է Անգլիոյ գաղթային նախարարին դէմ ։

Imp. Araxes - 46, Rue Richer, Paris (9e)

ՄԱՐԶԱԿԱՆ ԿԵԱՆՔ․— Կիրակի օր պաշտօնապէս բացուեցաւ 55-56ի Ֆրան-սայի փրոֆէսիոնէլ ցաւին եղանակը ։ Փառք տէ Փրէնսի մէջ Սէ Ա․ Փարին (որուն մէջ կը խաղայ Եաղճեան իբրեւ վերջա - պահ) հաւասար մնաց Պզանսոնի հետ 1-1 ։ Աւելի վերջ, մինչ երկրորդ բաժանումի լաւագոյն խումբերէն Ռէնն պարտութեան մատնեց Սթատ Ֆրանսէն մէկի դէմ երեք կէտով, երեք կէտն ալ նշանակելով երկ - րորդ կիսախաղին ։ Առաջին բաժանումին, ախոյեան խումբը, Ռէնս պարտուեցաւ Սէն Թ՛Էթիէնէն 1-3 ։

Միջազգային հանդիպումներու կարգին Մոսկուայի մէջ Խ․ Միութիւնը պարտու-թեան մատնեց Արեւմտեան Գերմանիոյ խումբը երկուքի դէմ երեքով ։

Ֆրանսա - Ռումանիա աթլէթիզմի մըր-ցումներուն մէջ, որոնք տեղի ունեցան Պուքրէշ, Ֆրանսա պարտուեցաւ 101ի դէմ 112 կէտով ։



## ՀՐԱՒԷՐ ԱՇԽԱՏԱՆՔԻ

Լիոնի Եկեղեցւոյ եւ Ազգ․ Տան շինու - թեան համար այն հայրենակիցները ո-րոնք խոստացած են եւ տրամադիր գործ-նական աշխատանքներու համար բերելու իրենց մասնակցութիւնը, կը հրաւիրուին Նոյեմբերին 1-ի եկեղեցւոյ շաբթին, տիւ տը Փանսիոն, Պ․ Մ․ Ազիլեանին ։

Դիւան Ազգ․ Միութեան





### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Հայկանոյշ Բաղտասարեան եւ զաւակը՝ Ժաքօ եւ ազգականները ի - րենց խորին շնորհակալութիւնը կը յայտ-նեն Հ․ Յ․ Դ․ մարմիններուն եւ անհատ ընկերներու, Ֆր․ Կ․ Խաչին, Համազգա - յին ընկերութեան եւ բոլոր անոնց որ փութացին իրենց վշտակցութիւնը յայտ - նել իրենց ամուսնոյն եւ հօր՝

ԳՆԴ․ ՏԻԳՐԱՆ ԲԱՂՏԱՍԱՐԵԱՆԻ

մահուան առթիւ ։





### ԳԻՐՔԻ ԽՆԴՐԱՆՔ

Գահիրէի Ազգ․ Առաջնորդարանի Թոր-գոմեան Ազգային Մատենադարանին հա-մար ջերմապէս կը խնդրենք յարգոյ հե - ղինակներէն, հրատարակիչներէն եւ հան-դէսներու եւ թերթերու վարչութիւններէն իրենց լոյս ընծայած գիրքերէն կամ պար-բերականներէն մէկական օրինակ նուի - րել մեր հոգածութեան յանձնուած մատե-նադարանին ։

Հասցէ․—

Bibliothèque Torcomian
Patriarcat Arménien
179, Nahdat Masr Le Caire (Egypte)

Յ․ Գ․— Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել ։

լադրուած էր դուրսէն։ Այս յայտարարութեան վրայ, Երկրի ապահովութեան վերատեսուչը էքս լէ Պէն գնաց կայծակի արագութեամբ։ Իրաւասու իշխանութիւնը կը շարունակէ պրպտումներ կատարել, անցեալ շաբթուան դէպքերուն շարժառիթները եւ դրդիչները երեւան հանելու համար։ Տեղական թերթերը կը գրեն թէ կասկածներ կը տիրեն համայնավարներուն եւ արաբ ազգայնականներուն մասին։ Կ'ըսեն թէ այս վերջինները յայտնապէս կը քաջալերուին Եգիպտոսի եւ ուրիշ արաբական երկիրներու կողմէ։ Կը հաստատուի թէ Խուրիպկայի եւ Ուէտ Զեմի ցեղախումբերը, որոնք այնքան վայրագութիւններ գործեցին, կանխաւ պատրաստուած էին։ Նոր տեղեկութեանց համաձայն, կարգ մը Եւրոպացիներու մարմինները այնքան յօշոտուած էր որ, դժուար էր վերակազմել, թաղելու համար։

× Պատաւէն կը հեռագրեն թէ կառավարութիւնը 700.000 տոլար տրամադրած է, օգնելու համար Մարոքի ազգայնականներուն։ Դրամը պիտի ղրկուի Միջազգային Կարմիր Խաչին եւ Իրաքի Կարմիր Մահիկին միջոցաւ, դեղեր եւ ուրիշ պիտոյքներ գնելու համար։ Վարչապետը խոստացաւ դարձեալ նիւթական եւ բարոյական աջակցութիւն ընծայել Հիւս. Ափրիկէի Արաբներուն։

× Ազգաժողովին ընդհ. քարտուղարը պատասխանելով զանազան հարցումներու, մաղթեց որ էքս լէ Պէնի խորհրդակցութիւնները բարեյաջող ելքի մը յանգին։ Յետոյ աւելցուց. — «Ազգաժողովին կողմէ որեւէ միջամտութիւն նպատակայարմար կրնայ ըլլալ եթէ օգտակար է կամ կը նպաստէ խնդիրը լուծելու»։

× Նոր զօրակոչին առթիւ պաշտօնապէս կը ճշդուի թէ հրամանագիրը նկատի ունի 1932 Նոյեմբեր 16ի եւ 1933 Մարտ 5ի միջեւ ծնած երիտասարդները, որոնք պիտի կանչուին համաձայն օրուան պէտքերուն, անհատապէս կամ շարք - շարք։ Ուրեմն ամէնքն ալ մէկ անգամէն զօրաշարժի ենթակայ չեն։

## ՀԵՏԱՊՆԴՈՒՄՆԵՐԸ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԻՆ

Վերջին լուրերու համաձայն, Ֆրանսական ուժերը կը շարունակեն յառաջխաղալ դէպի Ատլաս լեռները, հետապնդելով ըմբոստ ցեղախումբերը։ Պաշտօնական աղբիւրէ կը հաղորդեն թէ Սմալա ցեղախումբէն երկու հազար հոգի, կիներով եւ մանուկներով հաւանաբար հինգ հազար հոգի, անհետացած են իրենց նախկին բնակավայրէն եւ ապաստանած են Միջին Ատլասի ամենաբարձր կատարներուն վրայ։ Զինուորական շրջանակներու մէջ կը կարծեն թէ այս փախստականները կրնան հրոսախումբեր կազմել, դժուարին կացութիւն մը ստեղծելով։ Ուստի կը գործեն ուժգնօրէն, թէեւ հաղորդակցութեան միջոցներ դրեթէ չկան։

Ֆրանսական աղբիւրէ կը հաւաստեն թէ ոչ միայն ջարդը յատկապէս կազմակերպուած էր, այլ եւ Խուրիպկայի Փոսֆատի հանքերուն քանդումը կատարուած էր մասնագիտօրէն։ Այժմ անգործութեան դատապարտուած են 8000 պաշտօնեաներ։ «Իւմանիթէ» տասը հազար կը հաշուէ հետապնդող բանակին զինուորներուն թիւը, ուրիշ թերթեր՝ երեք հազար, սպառազինուած՝ արդիական զէնքերով։

× Ալժերիոյ կուսակալը, Ժագ Սուսթէլ, յայտարարեց թէ երկար ժամանակի կը կարօտի Կոստանդինի շրջանին անդորրութեան վերահաստատումը։ «Թէեւ ըմբոստները իրենց նպատակին չհասան, բայց ամէն միջոց կը փորձեն, անիշխանական վիճակ մը ստեղծելու համար։ Զինեալ ուժերը ոչ միայն կ'ապահովեն եւրոպական կեդրոններուն պաշտպանութիւնը, այլ եւ հակայարձակումի կը դիմեն, մաքրելով ըմբոստութեան բոյները։ Այնտեղ ալ ապստամբութեան գլխաւոր կեդրոնը կը գտնուի լեռներու վրայ, ուր ըմբոստները կը պահուին անմատչելի անդունդներու եւ քարայրներու մէջ»։

ԱՒՍՏՐԻՈՅ 15.4000 բժիշկները եւ ատամնաբոյժները երկօրեայ գործադուլ մը սարքեցին, բողոքելու համար նոր օրէնքի մը դէմ որ կը սահմանափակէ իրենց անհատական գործունէութիւնը եւ «կը մըտնդէ իրենց անկախութիւնը»։ Բոլոր մասնաւոր բուժարանները փակուեցան։ Վիէննայի բժիշկները թափօր մը կազմեցին փողոցներուն մէջ, իրենց ճերմակ շապիկներով։

ՉԵԽՈՍԼՈՎԱՔԻԱ եւս որոշեց կրճատել իր բանակին թիւը, հետեւողութեամբ Խ.

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՄՇԱԿ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԵՒ ՆՇԱՆ ՓԱԼԱՆՃԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻՆ

ԺԲ. ՑԱՆԿ ՓԱՐԻԶԻ (Սրբագրուած)

| | |
|---|---|
| Կարօ Երամեան | 2.500 |
| Տէր եւ Տիկին Փափազեան (Ֆօնթընէ) | 1.000 |
| Մարտիրոս Սարգիսեան (Վալանս) | 1.000 |
| Ոմն (Ալֆորվիլէն) | 500 |
| | 5.000 |
| Նախորդ գումար՝ | 856.700 |
| Ընդհ. գումար | 861.700 |

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՀԱՅՏԵԼԲԵՐԳ.— Խորին կսկիծով կը յայտնեմ ցաւակցութիւնս Հ. Յ. Դ. Կեդր. Կոմիտէին եւ ընկերներին գնդ. ՏԻԳՐԱՆ ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆի մահուան առթիւ։ Հ. Օհանեան։



Միութեան։ Չեխական բանակին զինուորներուն թիւը կը հաշուեն 240.000 հոգի, 200.000 պահեստիներով։ Ոստիկանութեան եւ ապահովութեան զինուորներուն թիւն է 260.000։

ՀԻՒԼԷՍԱԿԱՆ 150 մասնագէտներ 35 երկիրներէ որոնց մէջ կան խորհրդային եւ չինական պատուիրակները, առջի օր այցելեցին Անգլիոյ Հարուէլի հիւլէական փորձերու կեդրոնը։ Թերթերը կ'ըսեն թէ Անգլիոյ կատարած այս հրաւէրին նպատակն է առաջնակարգ տեղ մը գրաւել հիւլէական գործիքներու շուկային մէջ։ Կարմիր ճակատին այցելուներու թիւն էր 39։

Imp. Araxes Rue Richer, Paris (9e)

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք մեր բաժանորդներէն անյապաղ կարգադրել առկախ հաշիւները, դիւրացնելու համար վարչութեան գործը, մանաւանդ այս արձակուրդի շրջանին։

Կանխայայտ շնորհակալութիւններ։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ



## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ԼԻՈՆ.— Այրի Տիկին Մարի Գալուստեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնին եւ հօր՝ Խաչիկ Գալուստեանի մահուան քառասունքին առթիւ, Լիոնի Հայոց եկեղեցին (ռիւ Լուի Պլան) այս կիրակի առաւօտուն յետ պատարագի։ Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները։

## ԽԱՐԲԵՐԴՑԻՆԵՐՈՒՆ

Համախարբ. Միութեան Վալանսի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս շաբաթ երեկոյեան ժամը 9ին, Պ. Գ. Սիմոնեանի սրճարանին մէջ, 25 ռիւ Պէլ Իմաժ։ Օրակարգ.— Նամակներու ընթերցում, զեկուցում պատգմ. ժողովին, վարչութեան ընտրութիւն։ Սիրով կը հրաւիրուին անդամ եւ ոչ անդամ բոլոր Խարբերդցիները։ Ներկայ պիտի ըլլայ Կեդր. վարչութեան նախագահ Պ. Կ. Կիւմիւշեան։ — Վարչութիւն



## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան կոմիտէին ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը 20.30ին դպրոցին սրահը։ Խիստ կարեւոր օրակարգ։ Ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։

ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՄԱՐՍԷՅԼ, Առ որ անկ է.— Որ եւ է թղթակցութիւն չենք ստացած այդ յուղարկաւորութեան առթիւ։



ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ ԷՔՍ ԼԷ ՊԷՆԻ ՄԷՋ

Այս կիրակի, առաւօտէն մինչեւ իրիկուն, Թելեֆերիքի մօտակայ Շաթէնէ կոչուած վայրը, անտառի մարգագետնին վրայ։ Հաճելի ժամանց ամէնուն, մասնաւորապէս երիտասարդութեան համար։ Երաժշտական բաժին ժողովրդական երգերով։

